Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ



№ 8 ԱՊՐԻԼ 1956

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





# ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՏՈՆՆ Է

Մայիսի մեկը աշխատավորների միջազգային համերաշխության, բոլոր երկրների բանվորների եղբայրության օրն է։ Աշխարհի բոլոր մասերում հասարակ մարդիկ հանդիսավոր կերպով նշում են Մայիսի մեկը, որը դարձել է խաղաղության, դեմոկրատական ազատությունների, սոցիալիզմի համար պայքարի սիմվոլ։ Մայիսմեկյան տոնին նրանք ցուցադրում են մարդկության լավագույն ապագայի համար պայքարի իրենց վճռականությունն ու միասնությունը և այդ պայքարում իրենց ձեռք բերած հաջողությունները։

Սովետական ժողովուրդը աշխատավորների միջազգային տոնը նշում է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման գործում ձեռք բերած վիթխարի հաջողություններով, Կոմունիստական պարտիայի XX համագումարի պատմական որոշումների առաջ բերած քաղաքական և աշխատանքային

համաժողովրդական մեծ ակտիվության ու խանդավառության իրադրության մեջ:

Պարտիայի XX համագումարը ամփոփեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման հինգերորդ հնգամյա պլանի արդյունքները և նշեց հոյակապ միջոցառումներ մեր մեծ երկրի հետագա ծաղկման ու բարգավաճման համար:

Հինգերորդ հնգամյակում տեղի ունեցավ սոցիալիստական արդյունաբերության նոր հզոր վերելք: Հնգամյա պլանը արդյունաբերության գծով կատարվեց ժամկետից շուտ՝ չորս տարի չորս ամսում:

Կատարելով մեծ Լենինի պատգամները, Կոմունիստական պարտիան բարձր զարգացման է հասցրել ծանր արդյունաբերությունը, որը ամբողջ ժողովրդական տնտեսության զարգացման, աշխատավորների բարեկեցության անշեղ աճի և երկրի պաշտպանական հզորության ամրապնդման հիմքերի հիմքն է: ՍՍՌՄ արդյունաբերության արտադրանքը հնգամյակի տարիներին ավելացավ 85 տոկոսով, պլանով նախատեսված 70 տոկոսի դիմաց, ընդ որում արտադրության միջոցների արտադրությունը աճեց 91 տոկոսով, 1955 թվականին 3,2 անգամ ավելի արդյունաբերական արտադրանք է թողարկվել,



քան 1940 թվականին: Արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների, առաջին հերթին ծանր ինդուստրիայի գծով 1955 թվականին արտադրվել է չուգուն՝ 33 միլիոն տոննա, պողպատ՝ 45 միլիոն տոննա, գլանվածք՝ 35 միլիոն տոննա, ածուխ՝ 391 միլիոն տոննա, նավթ՝ 71 միլիոն տոննա, էլեկտրաէներգիա՝ 170 միլիարդ կիլովատ-ժամ, ցեմենտ՝ 22 միլիոն տոննա, տրակտորներ՝ 163 հազար հատ, հանքային պարարտանյութեր՝ 9,6 միլիոն տոննա և այլն:

Հինգերորդ հնգամյակի տարիներին առավել արագ տեմպերով էր զարգանում մեքենաշինությունը: Մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքի ծավալը 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, աճեց 2,2 անգամ, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ 4,7 անգամ: Ծանր արդյունաբերության առավել արագ զարգացման հետ միասին բուռն թափով աճեց նաև ժողովրդական լայն սպառման առարկաների արտադրությունը:

Տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների շնորհիվ մեր երկիրը կապիտալիզմի հետ տնտեսական մրցության մեջ ցույց է տալիս արտադրության աճման

շատ ավելի բարձր տեմպեր, քան կապիտալիզմի ամենազարգացած երկրները։ Մեր արդյունաբերության արտադրանքի աճման տարեկան միջին տեմպերը հինգերորդ հնգամյակում 3 անգամ բարձր էին, քան ԱՄՆ-ում և 3,8 անգամ բարձր, քան Անգլիայում։

Սովետական Միությունում մշտապես ավելանում է բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի թողարկումը։ Հինգերորդ հնգամյակում բնակչության մեկ շնչին ընկնող չուգունի ձուլումը ավելացավ 60 տոկոսով, պողպատինը՝ 52 տոկոսով, ածխի հանույթը՝ 72 տոկոսով, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 71 տոկոսով, բամբակե գործվածքների արտադրությունը՝ 40 տոկոսով, բրդե գործվածքներինը՝ 48 տոկոսով, շաքարինը՝ 24 տոկոսով։

Վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XX համագումարի ընդունած Դիրեկտիվներում նշվում է, որ մեր երկիրն այժմ ունի անհրաժեշտ բոլոր պայմանները, որպեսզի պատմականորեն ամենակարճ ժամկետներում տնտեսական խաղաղ մրցության ճանապարհին լուծի ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդիրը՝ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ



հասնել և անցնել կապիտալիստական առավել զարգացած երկրներից։

Մեր երկրում սոցիալիստական արդյունաբերության հետագա զարգացման լայն հեռանկարներ են բացվում վեցերորդ հնգամյակում։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի XX համագումարի Դիրեկտիվներում նշված են այն մեծ և նոր խնդիրները, որոնց իրագործումը թույլ կտա է՛լ ավելի բարձրացնել մեր երկրի տնտեսական հզորությունը և մեր ժողովրդի նյութական բարեկեցությունը։ Ինչպես նախորդ հնգամյակներում, այնպես էլ նոր հնգամյակում, ժողովրդական տնտեսության զարգացման գործում առաջատար դեր կունենա ծանր արդյունաբերությունը։ Առանց ծանր ինդուստրիայի առավել աճի անհնար է ապահովել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ընդլայնված վերարտադրությունը, անընդհատ տեխնիկական պրոգրեսը, անհնար է ապահովել մեր երկրի անխորտակելի պաշտպանունակությունը, բարձրացնել ժողովրդի բարեկեցությունը։ Դա հաստատվում է սովետական պետության պատմական փորձով։ Դիրեկտիվներում նախատեսվում է վեցերորդ

հնգամյակի ընթացքում արդյունաբերական արտադրանքի ծավալն ավելացնել 65 տոկոսով, ըստ որում արտադրության միջոցների արտադրությունը ավելանալու է 70 տոկոսով, իսկ սպառման առարկաներինը՝ 60 տոկոսով։ Դա նշանակում է, որ 1960 թվականին մեր երկրում 3 անգամ ավելի շատ արդյունաբերական արտադրանք է թողարկվելու, քան 1950 թվականին, և 5,3 անգամ ավելի, քան նախապատերազմյան 1940 թվականին։

Արդյունաբերության ասպարեզում վեցերորդ հնգամյակի կարևորագույն խնդիրներն են՝ սև ու գունավոր մետալուրգիայի, նավթի, ածխի ու քիմիական արդյունաբերության հետագա զարգացումը, ապահովել էլեկտրակայանների շինարարության գերազանցող տեմպեր և մեքենաշինության, հատկապես տեխնիկապես կատարյալ հաստոցների, դարբնոցա-մամլակային մեքենաների, ավտոմատիկայի միջոցների ու սարքերի արտադրության արագ աճ։ 1960 թվականին մեր երկրում մոտավորապես կարտադրվի՝ 53 միլիոն տոննա չուգուն, կամ 3,6 անգամ ավելի, քան 1940 թվականին, 68,3 միլիոն տոննա պողպատ, կամ 3,7 անգամ ավելի, քան 1940 թվականին, 52,7 միլիոն տոննա գլանվածք,



կամ 4 անգամ ավելի, քան 1940 թվականին, 593 միլիոն տոննա ածուխ, կամ 1,5 անգամ ավելի, քան 1955 թվականին, 135 միլիոն տոննա նավթ, կամ գրեթե 4,5 անգամ ավելի, քան 1940 թվականին և այլն։

Անշեղորեն կենսագործելով Լենինի ցուցումները երկրի էլեկտրիֆիկացման մասին, 1960 թվականին նախատեսվում է արտադրել 320 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, կամ 88 տոկոսով ավելի, քան 1955 թվականին, ընդ որում մեծ մասշտաբներով ծավալվելու է հիդրոէլեկտրակայանների շինարարությունը Վոլգայի, Կամայի և երկրի մյուս գետերի վրա։ Հատկապես Սիբիրում կծավալվի վիթխարի հիդրոէլեկտրակայանների՝ Անգարայի վրա Բրատսկի և Ենիսեյի վրա Կրասնոյարսկի հիդրոէլեկտրակայանների կառուցումը։ Դրանցից յուրաքանչյուրը ունենալու է 3 միլիոն 200 հազար կիլովատ կարողություն և տարեկան արտադրելու է նույնքան էլեկտրաէներգիա, որքան Կույբիշևի և Ստալինգրադի հիդրոէլեկտրակայանները՝ միասին վերցրած։ Հնգամյակի կարևոր խնդիրներից մեկը ատոմային էլեկտրակայանների լայն շինարարությունն է, ատոմային էներգիայի՝ խաղաղ նպատակներով լայն օգտագործումը, որը բխում է սովետական երկ-

րի խաղաղասիրական արտաքին քաղաքականությունից։ Նախատեսված է հնգամյակում կառուցել երկու—երկուս և կես միլիոն կիլովատ ընդհանուր կարողությամբ մի քանի ատոմային էլեկտրակայան, որը գրեթե մեկ ու կես անգամ կգերազանցի բոլոր այն էլեկտրակայանների կարողությանը, որոնց կառուցումը նախատեսված էր ԳՈԷԼՌՈ-ի հայտնի պլանով։

Հնգամյակի տարիներին մեծ զարգացման է հասնելու քիմիական արդյունաբերությունը. միայն 1960 թվականին արտադրվելու է մոտ 20 միլիոն տոննա հանքային պարարտանյութեր կամ երկու անգամ ավելի, քան 1955 թվականին։ Նոր հնգամյակում մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքը ավելացվելու է 80 տոկոսով, ցեմենտի արտադրությունը 1960 թվականին հասցվելու է 55 միլիոն տոննայի, 1955 թվականին արտադրված 22 միլիոն տոննայի դիմաց։ Վեցերորդ հնգամյակում կապիտալ շինարարության մեջ ներդրվելու է վիթխարի մի գումար՝ 990 միլիարդ ռուբլի։

Նոր հնգամյակում խոշոր աշխատանք է կատարվելու արդյունաբերության բնագավառի թերությունները վերացնելու, տեխնիկական պրոգրեսի, աշխատանքի խելացի կազ-



մակերպման, արտադրության մասնագիտացման ու կոոպերացման, արտադրանքի որակի բարձրացման և ինքնարժեքի իջեցման, աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղղությամբ, որոնց վերաբերյալ ծավալուն որոշում է ընդունել ՍՄԿԿ Կենտկոմի դեռևս Հուլիսյան պլենումը (1955 թ.)։

Սովետական ժողովուրդը Մայիսի մեկը տոնում է նաև գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերած խոշոր հաջողություններով։ Հինգերորդ հնգամյակի վերջին 2—3 տարիները եղան գյուղատնտեսության մի քանի կարևոր ճյուղերի զարգացման լուրջ կերպով ետ մնալը հաղթահարելու տարիներ։ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Սեպտեմբերյան, Փետրվար-Մարտյան և Հունվարյան պլենումների և մյուս որոշումներում բացահայտվեցին գյուղատնտեսության ղեկավարման գործի լուրջ թերություններն ու սխալները և մշակվեց հացահատիկի, անասնաբուծական մթերքների ու գյուղատնտեսական մյուս ապրանքների արտադրությունն ավելացնելու ընդարձակ ծրագիր։ Դրա հիման վրա երկրում իրականացվեցին գյուղատնտեսության վերելքի խոշոր միջոցառում-

ներ։ 1954 և 1955 թվականներին գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումները կազմեցին 34,4 միլիարդ ռուբլի, այդ երկու տարում կոլտնտեսությունները, ՄՏԿ-ներն ու սովխոզներն ստացան 404 հազար տրակտոր (վերածած 15-ուժանոցի), 228 հազար բեռնատար ավտոմեքենա, 83 հազար հացահատիկային կոմբայն և մեծաքանակ այլ տեխնիկա։ Սրանց հետ մեկտեղ իրականացվեցին ու իրականացվում են գյուղատնտեսության աշխատողների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու մի շարք միջոցառումներ, որոնց շնորհիվ զգալիորեն բարձրանում է գյուղատնտեսական արտադրության մակարդակը։

Պարտիայի կողմից ձեռնարկված միջոցառումների շնորհիվ ՄՏԿ-ներում արդեն ստեղծվել են մեխանիզատորների մշտական կադրեր, քաղաքներից գյուղատնտեսության մեջ աշխատանքի են ուղարկվել 29 հազար ինժեներներ ու տեխնիկներ, ավելի քան 120 հազար գյուղատնտեսական մասնագետներ, 20 հազարից ավելի կոմունիստներ՝ որպես կոլտնտեսության նախագահներ և այլն։

Վեցերորդ հնգամյակում գյուղատնտեսության համախառն արտադրանքը պետք է աճի մոտ 70 տոկոսով։ Բերքատվության



բարձրացման և նոր հողերի հետագա յուրացման հիման վրա 1960 թվականին հացահատիկի համախառն բերքը պետք է հասցվի 11 միլիարդ փթի։ Ընդամենը՝ եգիպտացորենի ցանքատարածությունները 1960 թվականին հասցվելու են 28 միլիոն հեկտարի։ Տարեկան 11 միլիարդ փութ հացահատիկի ստացումը թույլ կտա բավարարել բնակչության աճող պահանջմունքները հացի ասպարեզում, ավելացնել պետական ռեզերվները, բավարար քանակությամբ հատիկ առանձնացնել որպես անասնակեր և ծածկել այլ կարիքները։

Նոր հնգամյակի տարիներին ընդլայնվելու է տեխնիկական կուլտուրաների ցանքատարածությունը և բարձրացվելու է նրանց բերքատվությունը։ 1955 թվականի համեմատությամբ, 1960 թվականին բամբակի հումքի արտադրությունն ավելացվելու է 56 տոկոսով, վուշաթելինը՝ 35 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 54 տոկոսով։ Ընդլայնվելու են խաղողի և պտղատու այգիների տարածությունները, մեծապես ավելացվելու է կարտոֆիլի և բանջարեղենի արտադրությունը, որի համար պարտիան ու կառավարությունը վերջերս սահմանել են շահագրգռիչ նոր պայմաններ՝ զգալի չափով բարձրացրել են կար-

տոֆիլի և բանջարեղենի գնման և մթերման գները։ 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, կարտոֆիլի արտադրությունը ավելացվելու է 85 տոկոսով, իսկ բանջարեղենինը՝ 118 տոկոսով։

Անասնաբուծության բնագավառում խնդիր է դրվում ամեն կերպ ավելացնել հողատարածությունների յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց անասնաբուծական մթերքների արտադրությունը։ 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, նախատեսվում է մսի արտադրությունը ավելացնել երկու անգամ, կաթինը՝ մոտ երկու անգամ, ձվինը՝ 154 տոկոսով, բրդինը՝ 82 տոկոսով։

Առաջադրված խնդիրները կատարելու համար վեցերորդ հնգամյակում զգալիորեն բարձրացվելու է գյուղատնտեսության մեքենայացումը, որը հնարավորություն կընձեռի ապահովելու գյուղատնտեսական արտադրության շեշտակի վերելքը։ 1956—1960 թվականներին գյուղատնտեսությունը կստանա մոտ 1 միլիոն 650 հազար տրակտոր (վերածած 15-ուժանոցի), 560 հազար հացահատիկային կոմբայն, 250 հազար եգիպտացորենի ու սիլոս հավաքող կոմբայն և շատ այլ մեքենաներ։ Լայնորեն



մեքենայացվելու են անասնաբուծության աշխատատար պրոցեսները, վիթխարի աշխատանք է կատարվելու գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման գծով։ Երկրի գյուղատնտեսության աշխատողները, ջերմորեն արձագանքելով պարտիայի ու կառավարության նոր կոչին, ծավալելով սոցիալիստական մրցություն, պայքարում են գյուղատնտեսության շեշտակի վերելքը կարճ ժամկետում ապահովելու համար, հնգամյակի առաջին տարին՝ 1956 թվականը բարձր բերքատվության և բարձր մթերատվության տարի դարձնելու համար։

Արդյունաբերության և գյուղատնտեսության աճի հիման վրա անշեղորեն բարձրացել է ժողովրդի կենսամակարդակը։ Հինգերորդ հնգամյակում ՍՍՌՄ ազգային եկամուտը ավելացել է 68 տոկոսով, բանվորների ու ծառայողների աշխատավարձը՝ 39 տոկոսով, կոլտնտեսականների ռեալ եկամուտները՝ 50 տոկոսով։ Այդ տարիներին պետությունը 689 միլիարդ ռուբլի է ծախսել սոցիալական ապահովագրության գծով նպաստների վրա, բանվորների ու ծառայողների արձակուրդների, հանգստյան տների ու սանատորիաների ձրի և արտոնյալ ուղեգրերի, թոշակների վճարման, բժշկա-

կան օգնության, ուսանողների թոշակների վճարման համար և այլն։ Սոցիալիստական էկոնոմիկայի վերելքի հիման վրա տարեցտարի աճել է ժողովրդական սպառման ծավալը։ 1955 թվականին պետական և կոոպերատիվ առևտրի միջոցով բնակչությանը 1,9 անգամ ավելի շատ ապրանքներ է վաճառվել, քան 1950 թվականին։

Վեցերորդ հնգամյակում 50 տոկոսով ավելանալու է պետական ու կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունը։ 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, բնակչության համար կարևորագույն ապրանքների վաճառքը ավելացվելու է հետևյալ չափերով. մսամթերքներինը՝ 85 տոկոսով, կենդանական յուղինը՝ 57 տոկոսով, կաթինը և կաթնամթերքինը՝ 2,7 անգամ, շաքարինը՝ 70 տոկոսով, բրդե և մետաքսե գործվածքներինը՝ 2 անգամ, պատրաստի հագուստեղենինը՝ 67 տոկոսով, կահույքինը՝ 2 անգամ, ռադիոընդունիչներինը՝ 2,2 անգամ և այլն։

Նոր հնգամյակում բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը բարձրանալու է մոտ 30 տոկոսով, իսկ կոլտնտեսականների եկամուտներն ավելանալու են առնվազն 40 տոկոսով։ Նոր հնգամյակում



բարձրացվելու է ցածր վարձատրվող աշխատողների աշխատավարձը, լինելու է աշխատավարձի ընդհանուր կարգավորում, բարձրանալու են մի շարք կատեգորիայի թոշակառուների կենսաթոշակները և այլն։ Այնուհետև, բանվորների և ծառայողների աշխատանքային օրվա տևողությունը 8 ժամվա փոխարեն լինելու է 7 ժամ, իսկ որոշ տեղերում՝ 6 ժամ։ Շաբաթ և նախատոնական օրերին աշխատանքային օրը արդեն կրճատվել է 2 ժամով, երկարացվել են կանանց հղիության և հետծննդյան արձակուրդները և այլն։

Ժողովրդի նյութական բարեկեցության համար վիթխարի նշանակություն ունի բնակարանային շինարարության լայն ծավալումը։ Վեցերորդ հնգամյակում բնակարանային շինարարությունը, հինգերորդ հնգամյակի համեմատությամբ, կրկնապատկվելու է։ Հնգամյակում ընդլայնվելու է հասարակական սննդի ցանցը, բարելավվելու է նրա աշխատանքը։

Վեցերորդ հնգամյակում նոր թափով կծաղկի ու կբարգավաճի սովետական կուլտուրան ու գիտությունը։ Վեցերորդ հնգամյակում ամենուրեք իրագործվելու է միջնակարգ կրթությունը։ Այդ տարիներին միջնա-

կարգ դպրոցների տասներորդ դասարանները երկրին կտան 6 միլիոն 300 հազար շրջանավարտ, կամ 2 անգամ ավելի շատ, քան նախորդ հնգամյակում։ Զգալիորեն ավելանալու է բարձրագույն և միջնակարգ կրթությամբ մասնագետների թիվը։ Նախատեսված է նոր հնգամյակում պատրաստել 4 միլիոն մասնագետ։ Միայն բուհերը երկրին կտան ավելի քան 650 հազար ինժեներներ, կամ 2 անգամ ավելի, քան հինգերորդ հնգամյակում։

***

Մայիսմեկյան տոնը մեծ հաջողություններով է նշում նաև Սովետական Հայաստանի աշխատավորությունը։

Հինգերորդ հնգամյակի առաջադրանքները արդյունաբերության գծով Հայաստանում կատարվեցին ժամկետից շուտ՝ 4 տարում։ 1955 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերությունը համարյա 2 անգամ ավելի արտադրանք տվեց, քան 1950 թվականին, համարյա 5 անգամ ավելի, քան 1940 թվականին։ Ըստ որում գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունների արտադրանքը ավելացել է 3,3 անգամ, քիմիական արդյունաբերությանը՝ 2,7 անգամ,





մեքենաշինությանը՝ 3,4 անգամ, էլեկտրաէներգիայինը՝ 2,3 անգամ և այլն։ Արդյունաբերության հիմնական ֆոնդերը հնգամյակի 4 տարում ավելացան 40 տոկոսով։

Զգալի են հաջողությունները գյուղատնտեսության բնագավառում։ Հնգամյակի տարիներին ռեսպուբլիկայում հացահատիկի արտադրությունը ավելացել է 11 տոկոսով, ծխախոտինը՝ 50 տոկոսով, կաթինը՝ 2 անգամ, մսի արտադրությունը՝ 61 տոկոսով, բրդինը՝ 86 տոկոսով և այլն։

Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել բնակարանային շինարարության, կուլտուրայի, գիտության բնագավառում։ Հայաստանի էկոնոմիկան նոր, վիթխարի զարգացման է հասնելու վեցերորդ հնգամյակում։

Պարտիայի XX համագումարի Դիրեկտիվներում նախատեսված է մեր ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը վեցերորդ հնգամյակում ավելացնել մոտ 1,7 անգամ, այդ թվում ռեսպուբլիկական արդյունաբերության համախառն արտադրանքը՝ 1,6 անգամ։

Ռեսպուբլիկայի էլեկտրաէներգիայի արտադրությունը ավելանալու է 1,3 անգամ։ Ավարտվելու է Սևան—Հրազդան կասկադի

մնացած 5 հիդրոէլեկտրակայանների՝ Արզնիի, Աթարբեկյանի, Երևանի, Նորագավիթի և Արգավանդի հիդրոէլեկտրակայանների շինարարությունը, սկսվելու է Որոտանի կասկադի, մասնավորապես Տաթևի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը։

Մեր ռեսպուբլիկայում բարձր տեմպերով են զարգանալու գունավոր մետալուրգիան, քիմիական արդյունաբերությունը, մեքենաշինությունը, թեթև ու սննդի արդյունաբերությունը։

1960 թվականին հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը հասցվելու է միջին հաշվով 13,9 ցենտների, այդ թվում եգիպտացորենինը՝ 22,3 ցենտների, ցորենինը՝ 12,4 ցենտների։ Հացահատիկի համախառն արտադրությունը ավելացվելու է 1,5 անգամ։ Նախատեսվում է 1955 թվականի համեմատությամբ մսի արտադրությունը ավելացնել մոտ 2,1 անգամ, կաթինը՝ մոտ 2,2 անգամ, բրդինը՝ 1,8 անգամ, ձվինը՝ 2 անգամ, բոժոժինը՝ 1,8 անգամ։ Նախատեսվում է վեցերորդ հնգամյակում ռեսպուբլիկայում տնկել 13 հազար հեկտար խաղողի և 11 հազար հեկտար պտղատու այգիներ։ Զգալի չափով ընդլայնվելու է ոռոգման ցանցը։ 1958 թվականին ավարտ-



վելու է Թալինի, Արզնի—Շամիրամի, իսկ 1959 թվականին Կոտայքի ջրանցքների շինարարությունը, 1959 թվականին սկսվելու է Արզնի—Շամիրամ ջրանցքի երկրորդ հերթի շինարարությունը։

Հայաստանի աշխատավորները, սովետական մյուս ժողովուրդների հետ միասին, լի են վճռականությամբ պատվով կատարելու ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները, վեցերորդ հնգամյակի հոյակապ խնդիրները։

Մայիսմեկյան միջազգային տոնը տնտեսության ու կուլտուրայի անշեղ վերելքի պայմաններում են դիմավորում նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրները, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի աշխատավորները։

Սոցիալիզմի լագերի երկրների ժողովուրդները, ամբողջ աշխարհի խաղաղասեր ժողովուրդները այս տարի Մայիսի մեկը տոնում են միջազգային լարվածության որոշակի թուլացման, խաղաղության ուժերի հետագա ակտիվացման ու ամրապնդման պայմաններում։

Մայիսմեկյան տոնակատարությունը կլինի խաղաղության համար ժողովուրդների պայքարի հզոր ցույց։

# ՄԱՄՈՒԼԻ ՕՐԸ

Վ. ԱՄԻՐԲԵԿՅԱՆ

1912 թվականի մայիսի 5-ին, մեծ Լենինի նախաձեռնությամբ լույս տեսավ «Պրավդա»-ի առաջին համարը: Ի պատիվ «Պրավդա»-ի լույս ընծայման, ամեն տարի մայիսի 5-ին, Սովետական Միության աշխատավորները մեծագույն խանդավառությամբ նշում են այդ օրը, որպես Սովետական մամուլի տոնական օր:

«Պրավդա»-ն իր ստեղծման հենց առաջին օրվանից վիթխարի դեր խաղաց Կոմունիստական պարտիայի և միլիոնավոր աշխատավորների միջև սերտ կապն ամրապնդելու գործում: «Պրավդա»-ն Կոմունիստական պարտիայի ձեռքին դարձավ հզոր զենք սկզբում Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան նախապատրաստելու և հաջողությամբ անցկացնելու, իսկ հետագայում մեր երկրում սոցիալիզմի հաղթանակն ապահովելու համար:

Այժմ մեր մեծ երկրում բազմամիլիոն տիրաժով լույս տեսնող հազարավոր թեր-



թերն ու ամսագրերը աշխատելով «Պրավդա»-ի օրինակով, լուրջ օգնություն են ցույց տալիս պարտիական և սովետական կազմակերպություններին ՍՄԿՊ XX համագումարի որոշումները պատվով կատարելու համար:

Վլադիմիր Իլյիչ Լենինի ստեղծած սովետական մամուլը, որպես Կոմունիստական պարտիայի ամենասուր և հեռահար զենք, հանդես է գալիս մասսաների կոլեկտիվ պրոպագանդիստի, ագիտատորի և կազմակերպչի պատվավոր դերում: Իր էջերում մամուլը քաղաքի և գյուղի աշխատավորներին պարզաբանում է Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի XX համագումարի Դիրեկտիվները, հնգամյակ, որի գլխավոր խնդիրներն են՝ ծանր արդյունաբերության առավել զարգացման, տեխնիկական անընդհատ պրոգրեսի և աշխատանքի արտադրողականության բարձրացման բազայի վրա ապահովել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետագա հզոր աճը, իրականացնել գյուղատնտեսական արտադրության շեշտակի վերելք և այդ հիման վրա հասնել սովետական ժողովրդի նյութական բարեկեցության և

կուլտուրական մակարդակի նշանակալի բարձրացման։

Ամեն օր մեր երկրի թերթերը, ամսագրերը, ռադիոն հաղորդում են աշխատավորների քաղաքական, արտադրական այն խանդավառության մասին, որ առաջ են բերել մեր Հարազատ պարտիայի XX համագումարի որոշումները, նոր հնգամյակի վերաբերյալ Դիրեկտիվները։ Գործարաններում ու ֆաբրիկաներում, մեքենա-տրակտորային կայաններում ու կոլտնտեսություններում, հանքերում ու կառույցներում լայնորեն ծավալվում է համաժողովրդական սոցիալիստական մրցությունը՝ նոր հնգամյակի առաջին տարվա պլանները ժամկետից շուտ և որակական բարձր ցուցանիշներով կատարելու համար։

Իրենց տոնը նորանոր հաջողություններով են դիմավորում սովետական մամուլի աշխատողները։ Մամուլի ուժը պարտիական ղեկավարության մեջ է, նրա մասսայականության մեջ։ Եվ այսօր մամուլի աշխատողները հաշիվ են տալիս իրենց լավ գործերի մասին։ Նրանք հաշիվ են տալիս, որ Կոմունիստական պարտիայի անդուլ հոգատարության շնորհիվ մեր երկրում մամուլը աճում է վիթխարի չափերով։ Այժմ ՍՍՌՄ-



ում 57 լեզուներով լույս է տեսնում 7.200 թերթ, մոտ 48 միլիոն տիրաժով։ Այդ 7 միլիոն օրինակով ավելի է, քան 1952 թվականին լույս տեսած թերթերը։ Զգալիորեն աճել է նաև ամսագրերի հրատարակությունը։ Այս տարի երկրում 51 լեզվով լույս են տեսնում 1.760 ամսագիր և այլ պարբերականներ, որոնց տիրաժը հասնում է 360 միլիոնի։

Առանձնապես աճել է գրքի հրատարակությունը։ Վերջին չորս տարում ՍՍՌՄ-ում հրատարակվել է 187 հազար անուն գիրք՝ ութսուն լեզվով, չորս միլիարդ օրինակ տիրաժով։ Միլիոնավոր տիրաժով լույս են տեսնում մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները։ Միայն վերջին երեք տարում այդ աշխատությունները լույս են տեսել 100 միլիոն օրինակով։

Տարեցտարի ընդարձակվում է Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության հիմնադիր Վլադիմիր Իլյիչ Լենինի աշխատությունների հրատարակությունը։ Սովետական տարիներին 81 լեզվով լույս են տեսել 6.971 անուն գրքեր՝ 286 միլիոն 800 հազար օրինակ տիրաժով։ Ավարտված է Վ. Ի. Լենինի Երկերի 35 հատորյակի չորրորդ հրատարակությունը՝ ռուսերեն, ուկ-

րախներեն, բելոռուսերեն, ուզբեկերեն, ղազախերեն, վրացերեն, ադրբեջաներեն, լատիշերեն և հայերեն լեզուներով։

Հսկայական չափով կաճի գրքի հրատարակությունը վեցերորդ հնգամյակում։ Գրքի հրատարակությունը զգալիորեն աճել է նաև մեր ռեսպուբլիկայում։ Անցյալ տարի մեզ մոտ ստեղծվեց ուսումնա-մանկավարժական հրատարակություն, որը զբաղվում է միայն դասագրքերի հրատարակությամբ։ Մեծ ու պատվավոր խնդիր է դրված Պետհրատի վրա այս տարի։ Նա պետք է ռուսերեն հրատարակի հայ գրողների մի շարք գրքեր՝ Մոսկվայում կայանալիք Հայկական արվեստի և գրականության տասնօրյակի համար։

Նշելով իրենց ձեռք բերած նվաճումները, մեր ռեսպուբլիկայի մամուլի և հրատարակչության աշխատողները գիտակցում են, որ կատարածը բավարար համարել չի կարելի։ Չի կարելի հանգստանալ ձեռք բերածով։ Մամուլի աշխատողները չեն կարող աչք փակել դեռևս գոյություն ունեցող թերությունների առաջ և մինչև վերջ կպայքարեն այդ թերությունները վերացնելու համար։

Հարազատ Կոմունիստական պարտիայի քսաներորդ համագումարի որոշումները, ինչպես Սովետական Միության բոլոր աշխա-



տավորների, այնպես էլ մամուլի աշխատողների համար գործունեության ու նախաձեռնությունների լայն ասպարեզ են բացել։

Մեր անծայրածիր երկրի ամեն կողմերից հաղորդում են այն ստեղծագործական աշխատանքի մասին, որով նշանավորում են յուրաքանչյուր օրը սովետական մարդիկ։ Նրանք ուժ ու եռանդ չեն խնայում վեցերորդ հնգամյակի վիթխարի խնդիրները պատվով կատարելու համար։ Ուժեղ թափով ծավալվում է սոցիալիստական մրցությունը հնգամյակի առաջին տարվա պլանները կատարելու և գերակատարելու համար։

Պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ թերթերն ու ամսագրերը ամփոփում են համաժողովրդական սոցիալիստական մրցության առաջին արդյունքները, ուսումնասիրում և մասսայականացնում են մրցության առաջավորների հարուստ փորձը։

Լայնորեն մասսայականացնելով դրականը, նորը, առաջավորը, թերթերն ու ամսագրերը սուր քննադատության են ենթարկում աշխատանքում գոյություն ունեցող թերությունները և ամեն կերպ օգնում են պարտիական, սովետական կազմակերպություն-

ներին՝ վերացնելու թերությունները, հասնելու ընդհանուր վերելքի։

Մեր ռեսպուբլիկայի թերթերն ու ամսագրերը պատմում են, թե սովետական բազմազգ ժողովուրդների ընտանիքում, ինչ խնդիրներ ունեն կատարելու Սովետական Հայաստանի աշխատավորները։ Վեցերորդ հնգամյակում մեր ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը կավելանա մոտավորապես 1,7 անգամ, այդ թվում ռեսպուբլիկական արդյունաբերության արտադրանքը՝ 1,6 անգամ։ Նոր հնգամյակում հացահատիկի արտադրությունն ավելանալու է մոտավորապես 1,5 անգամ, մսի արտադրությունը՝ 2,1 անգամ, կաթինը՝ 2,2 անգամ, համարյա կրկնապատկվելու է բրդի և բոժոժի արտադրությունը։

Ռեսպուբլիկայի մամուլի աշխատողները այսօր ամփոփելով իրենց կատարածը, լրջորեն պետք է մտածեն թերթերն ու ամսագրերը ավելի բովանդակալից, հետաքրքրական ու նպատակասլաց դարձնելու մասին։

Վեցերորդ հնգամյակի վիթխարի խնդիրները հաջողությամբ կենսագործելու համար պարտիան պահանջում է ամբողջ քաղաքական-գաղափարական աշխատանքը ի սպաս



դնել աշխատավորների կոմունիստական դաստիարակության մեծ գործին։ Թերթերը և ամսագրերը պետք է սովետական իրականությունից, մեր բազմաբովանդակ, հարուստ կյանքից վերցրած կենդանի օրինակներով ցույց տան առաջավոր մարդկանց հայրենասիրական աշխատանքը և նրանց լավ օրինակով ոգեշնչեն հազարավոր ու միլիոնավոր մարդկանց։

Սովետական մամուլի ուժը միաժամանակ մասսաների հետ ունեցած կապի մեջ է։ Օրեցօր աճում է թերթերին, ամսագրերին գրող թղթակիցների, կոլտնտեսականների, քաղաքի և գյուղի ինտելիգենտների հզոր բանակը։

Սովետական մամուլը վայելում է ժողովրդական մասսաների սերն ու համակրանքը։ Այդ սերն ու համակրանքը մամուլը վաստակել է նրա համար, որ նա Կոմունիստական պարտիայի օգնականն է, նրա սուր զենքը, մարքսիզմ-լենինիզմի մեծ գաղափարների պրոպագանդիստը, մասսաների պրոպագանդիստը, ագիտատորը և կազմակերպիչը։

---

## ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԷԼԵԿՏՐԱԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՎԵՑԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

Գ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ

*Սովետական իշխանության տարիներին մեր մեծ երկրում վիթխարի աշխատանք կատարվեց էլեկտրաարդյունաբերության զարգացման ուղղությամբ։*

*Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ստեղծող Վլադիմիր Իլյիչ Լենինը հսկայական նշանակություն էր տալիս երկրի էլեկտրիֆիկացման պրոբլեմին։ Կոմունիզմը,— ասում էր նա,— Սովետական իշխանությունն է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացումը։ Մեծ Լենինը ուսուցանում էր, որ երկրի էլեկտրիֆիկացումը կոմունիզմի նյութա-տեխնիկական բազա ստեղծելու հիմքն է։ Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ ու ակտիվ մասնակցությամբ 1920 թվականին կազմվեց Ռուսաստանի էլեկտրիֆիկացիայի պլանը, որը դրվեց մեր երկրի սոցիալիստական արդյունաբերության և շինարարության հիմքում։*



*Ժամկետից շուտ կատարելով և գերակատարելով երկրի էլեկտրիֆիկացման լենինյան պլանը, պարտիան և կառավարությունը անընդհատ զարգացնում էին և այժմ էլ ավելի մեծ չափերով զարգացնում են մեր երկրի էներգետիկ արդյունաբերությունը։ 1955 թվականին Սովետական Միությունում էլեկտրաէներգիայի արտադրանքը նախասովետականի համեմատությամբ ավելացել է մոտ հարյուր անգամ։*

*Արտադրության բոլոր ճյուղերում՝ հանքերում, գործարաններում, ֆաբրիկաներում, մեքենա-տրակտորային կայաններում և ամենուրեք մեխանիզմները, հաստոցները, ագրեգատները աշխատեցնելիս մարդիկ օգտվում են էլեկտրատեխնիկական սարքավորումներից և հատկապես էլեկտրաշարժիչներից։ Այդ է պատճառը, որ մեր երկրում ջերմային և հիդրոէլեկտրակայաններ կառուցելու հետ զուգընթաց մեծ չափերով զարգանում է նաև էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը։*

*Վերջին տասնամյակում մեր ռեսպուբլիկայում զարգացման մեծ թափ է ստացել էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը։ Շահագործման են հանձնվել այնպիսի գործարաններ, ինչպիսիք են Հայէլեկտրո, էլեկ-*

տրատեխնիկական, կաբելի, էլեկտրավերանորոգման, էլեկտրալամպերի, էլեկտրաճշգրիտ չափիչների գործարանները։ Այդ գործարաններում արտադրվում են մեր ժողովրդական տնտեսության կարիքները բավարարող բազմաթիվ էլեկտրատեխնիկական սարքավորումներ, ինչպես, օրինակ, գեներատորներ, ուժային տրանսֆորմատորներ, շարժական էլեկտրակայաններ, էլեկտրաշարժիչներ, էլեկտրազոդման ապարատներ, զանազան կաբելային արտադրանքներ, էլեկտրալամպեր, վոլտմետրեր, ամպերմետրեր և այլն։ Այդ գործարաններում արտադրվում են նաև ժողովրդական լայն սպառման ապրանքներ— լուսամփոփներ, էլեկտրաարթուկներ և այլն։

Ռեսպուբլիկայում էլեկտրատեխնիկական արդյունաբերության բուռն զարգացման մասին կարող է վկայել այն փաստը, որ մեզ մոտ գյուղական հիդրոէլեկտրակայան կառուցելու համար կարիք չի զգացվում դրսից որևէ բան գնել, բոլոր անհրաժեշտ մեքենաներն ու նյութերը կարելի է ձեռք բերել տեղում։ Օրինակ, Երևանի հիդրոտուրբինների գործարանը կարող է տալ տուրբիններ, Հայէլեկտրոգործարանը՝ գեներատորներ և տրանսֆորմատորներ, կաբելի գործարանը՝ կաբելներ և էլեկտրական լարեր, էլեկտրա-



լամպերի գործարանը՝ էլեկտրական լամպեր, իսկ էլեկտրաճշգրիտ չափիչների գործարանը՝ զանազան ապարատներ և սարքավորումներ։

Սովետական ժողովուրդը բուռն խանդավառությամբ ընդունեց պարտիայի XX համագումարի որոշումները։

Այդ պատմական փաստաթղթում մեր Հայրենիքի ժողովուրդները տեսնում են մեր հետագա աննախընթաց վերելքի, մեր պետության էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա զարգացման գրավականը։ Վեցերորդ հնգամյա պլանում մեծ տեղ է գրավում արդյունաբերության հետագա զարգացումը։ Ծանր արդյունաբերության հետագա զարգացման բազայի վրա, տեխնիկական պրոգրեսի անընդհատ վերելքի և աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ պետք է ապահովվի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացումը։

Ծանր արդյունաբերության մյուս ճյուղերի հետ, վեցերորդ հնգամյակում մեծ տեղ է հատկացված նաև էլեկտրատեխնիկական արդյունաբերության զարգացմանը։

Էներգետիկ մեքենաշինության և էլեկտրատեխնիկական արդյունաբերության առաջ հարց է դրված՝ այս հնգամյակի ընթացքում

բարձրացնել թողարկվող արտադրանքի որակը և տեխնիկա-տնտեսական ցուցանիշները, թողարկել նոր տիպի հզոր շոգետուրբիններ, գազատուրբիններ, էլեկտրատրանսֆորմատորներ և էլեկտրապարատուրաներ բարձր լարման գծերի համար։ Այս նոր հնգամյակում պետք է յուրացվի կիսահաղորդիչների, նոր սինթետիկ էլեկտրամեկուսիչ նյութերի արտադրությունը և այլն։

Մեր ռեսպուբլիկայում էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը վեցերորդ հնգամյակի ընթացքում աճելու է ավելի քան երեք անգամ։ Հայէլեկտրագործարանը իր արտադրանքը հնգամյակի ընթացքում կավելացնի մոտ 3 անգամ։ Այդ ժամանակում կյուրացվի նոր տիպի գեներատորների արտադրությունը, որոնք ավելի կատարելագործված են, քան այժմյան արտադրածները։ Այդ գեներատորներում մեկ միավոր հզորության համար ծախսվում է 20—25 տոկոսով պակաս մետաղ և նյութեր, քան հին տիպի գեներատորներում։ Կարտադրվեն նոր տիպի շարժական էլեկտրակայաններ, ղեկավարման վահաններ, այս տարվանից գործարանը կսկսի արտադրել կոմպլեկտավոր տրանսֆորմատորային ենթակայաններ։

Երևանի Կաբելի գործարանը հնգամյակի



վերջում կտա 2,5 անգամ ավելի արտադրանք, քան հնգամյակի սկզբում, ըստ որում այդ ժամանակաշրջանում գործարանում կկազմակերպվի պղնձի և ալյումինի գլանումը, այսինքն փոխանակ Հայաստանում արտադրված պղինձը և ալյումինը ուղարկելու Սովետական Միության ուրիշ գործարաններ, որպեսզի այնտեղ գլանեն և այն նորից մենք հետ ստանանք, այստեղ, հենց տեղում կգլանվի պղինձն ու ալյումինը։ Միայն այդ տեխնոլոգիայի յուրացումը մեր երկրին միլիոնավոր ռուբլիների օգուտ կտա։ Այս հնգամյակում յուրացվելու է նաև էմալապատ լարերի արտադրությունը, որը չափազանց կարևոր է տրանսֆորմատորների, գեներատորների և էլեկտրաշարժիչների արտադրության համար։ Բացի այդ, մեծ թափով պետք է լայնացվի զանազան կտրվածքի ուժային կաբելների և էլեկտրական լարերի արտադրությունը։

Արտադրության մեծ լայնացում են ունենալու նաև էլեկտրաճշգրիտ չափումների, էլեկտրալամպերի և էլեկտրատեխնիկական գործարանները, որոնք իրենց արտադրանքը հնգամյակի վերջում կավելացնեն 2-ից մինչև 5 անգամ։ Էլեկտրաճշգրիտ չափիչների գործարանը արտադրելու է միլիվոլտմետրր-

ներ, միլիամպերմետրեր, հաստատուն հոսանքի ապարատուրաներ և գործիքներ, չափիչ կամրջակներ և զանազան ապարատուրա, որոնք շատ կարևոր են մեր արդյունաբերության մյուս ճյուղերի համար։

Էլեկտրալամպերի գործարանը այս տարի կսկսի արտադրել լյումինեսցենտային լամպեր (ցերեկային լույսի լամպեր), կավելացնի լամպերի ասորտիմենտը և 3—4 անգամ արտադրանքի չափը։

Բացի դրանից, մեր ռեսպուբլիկայում այս հնգամյակի ընթացքում կկառուցվեն և շահագործման կհանձնվեն մի շարք էլեկտրատեխնիկական և ռադիոտեխնիկական գործարաններ։

Մեր ռեսպուբլիկայի էլեկտրաարդյունաբերության գործարաններում աճել և մեծացել են հազարավոր որակյալ բանվորներ և բանվորուհիներ, ինժեներներ և տեխնիկներ, որոնք պատվով կկատարեն պարտիայի XX համագումարի կողմից իրենց առջև դրված բոլոր խնդիրները։

---



# ԽՆԱՅՈՂԱԲԱՐ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ՀՈՒՄՔԸ, ՏԱՆՔ ԱՎԵԼԻ ՇԱՏ ՈՒ ԲԱՐՁՐՈՐԱԿ ԱՐՏԱԴՐԱՆՔ

## Երևանի Կարի առաջին գործարանի ձևարանի ցեխի ագիտատոր Իսկուհի Ազատյանի զրույցը ցեխի բանվորների հետ

Ամեն անգամ Երևանի Կարի առաջին գործարանի բանվորներն ու բանվորուհիները հետաքրքրությամբ են լսում իրենց ագիտատոր Իսկուհի Ազատյանի զրույցը։ Նա իր պարզ ու հստակ խոսքով օգնում է մարդկանց ավելի լավ աշխատել, է՛լ ավելի եռանդով պայքարել Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի որոշումները կատարելու համար։

Իսկուհի Ազատյանի խոսքը միշտ դիպուկ է, կոնկրետ։

— Մեզ մեծ ոգևորություն պատճառեց,— ասում է նա,— մեր փառապանծ Կոմունիստական պարտիայի XX համագումարը իր պատմական որոշումներով։ Այսուհետև,

մենք է՛լ ավելի սիրով ու խանդավառությամբ պիտի աշխատենք նյութերը խնայողաբար օգտագործելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար։ Մեզանից նա է պարտիայի համագումարի որոշումները կատարելու լավ օրինակ տալիս, ով լավ է աշխատում, ով արտադրության առաջավոր է։ Այսօր ես պիտի խոսեմ այն մասին, թե ինչպես ենք մենք կիրառում խնայողության ռեժիմը, ինչպես ենք տնտեսում հումքը և ինչ եղանակով ենք հասնում հաջողությունների։

Այնուհետև ագիտատորը մանրամասնորեն պատմում է այն լավագույն աշխատողների մասին, որոնք խնայողաբար են օգտագործում հումքը և միաժամանակ բարձրացնում են թողարկվող արտադրանքի որակը։

— Պատահել են դեպքեր,— ասում է ագիտատորը,— երբ պահեստից ստացված գործվածքները չեն համապատասխանել իրենց մարկաներին։ Ցածր որակի կտորի վրա եղել են բարձր գնահատականի մարկաներ, կամ ընդհակառակը, ստացված կտորները հաճախ եղել են քանակով ավելի կամ պակաս։ Սրանից պարզ է, որ պահեստի աշխատողները պետք է խիստ ստուգեն ստացված կտորների քանակը, չափսերը և որակը։ Բավական



է այդ ուղղությամբ թերացում և դա բացասաբար կանդրադառնա մեր գործարանի ամբողջ աշխատանքի ընթացքի վրա։ Չեմ կարող սիրալիր խոսք չասել ստացված կտորների խոտանը որոշող բանվորուհի Օֆելյա Հակոբյանի մասին։ Նա ուշադիր է, շրջահայաց և աչքաբաց։ Նա միշտ կտորի որակը և տեսակը ճիշտ է որոշում։ Օրինակ, անցյալ ամսում նա նկատեց մի քանի կտորների անորակ լինելը և թույլ չտվեց, որ ցեխը վատ գործվածքից զգեստներ կարեր։ Դա օգնեց մեր գործարանին չտալ վատ արտադրանք։

Այնուհետև ագիտատորը պատմում է առաջավոր բանվորուհիներ Էմմա Պետրոսյանի և Արմենուհի Դադոյանի աշխատանքի փորձի մասին։

— Պետրոսյանը և Դադոյանը,— ասում է ագիտատորը,— ճիշտ չափումներ կատարելով՝ հնարավորություն են տալիս հաշվաներին որոշելու, թե կտորեղենի տվյալ քանակից ինչքան զգեստ կարելի է պատրաստել։ Նրանք կատարում են այնպիսի հաշվարկ, որպեսզի ոչ մի սանտիմետր կտոր ավելորդ չկորչի։ Ահա հենց այստեղից է սկսվում նյութեղենի խնայման այն աշխատանքը, որը մեզ մոտ տալիս է խոշոր ար-

դյումը։ Եթե ընկերներ Պետրոսյանն ու Դադոյանը չափումները կատարելիս վրիպեն, հաշվառներն էլ անփույթ գտնվեն, մենք ոչ թե խնայողություն կտանք, այլ կորուստներ, բայց բարեբախտաբար, այդպես չէ։ Շնորհիվ այդպիսի ճիշտ չափումների, որի հետևանքով ոչ մի սանտիմետր նյութի կորուստ չենք տվել, ես ձեզ պիտի հայտնեմ, որ միայն մարտ ամսին, մեր ցեխը 75 մետր բրդյա կտոր է խնայել, դրանից մենք կարել ենք 25 կոստյում։ Դա մեզ համար փոքրիկ խնայում չէ։ Մեկ ամսում մենք խնայել ենք նաև 300 մետր բամբակե գործվածքներ, որից պատրաստված է 150 կոստյումի աստառ։

Մեր խնայողական աշխատանքի մեջ վճռական դեր են կատարում նաև փուող բանվորուհիները։ Նրանցից պիտի շատ օրինակներ վերցնենք։ Փուող բանվորուհիների մեջ առանձնապես աչքի են ընկնում Տոսյա Սեդրակյանը, Ռոզա Մելքոնյանը, Շուշիկ Բադալյանը և Էլիզա Այվազյանը։

Ահա Տոսյա Այվազյանը։ Նա մեր գործարանում աշխատում է 1948 թվականից և միշտ էլ արժանացել է կոլեկտիվի հարգանքին։ Ինչո՞ւ. որովհետև նա լավ գիտի իր գործը։ Նա հետևում է, որ ոչ մի սանտիմե-



տրը կտորի վրա խոտան չլինի։ Ըստ սահմանված նորմայի, բանվորուհին կարող է մեկ տոկոսի հաշվով շեղումներ թույլ տալ։ Սակայն Տոսյան և նրա ընկերուհիները այդ «նորման» իջեցրել են 0,5 տոկոսի։ Այդ բոլորի շնորհիվ էլ մեր գործարանում տնտեսվում է զգալի քանակությամբ կտորեղեն։

— Ուզում եմ ձեզ պատմել,— շարունակում է ագիտատորը,— նաև երիտասարդ բանվորուհի Շուշիկ Բադալյանի մասին։ Նա միջնակարգ դպրոցն ավարտելուց հետո ճիշտ վարվեց, երբ ուղղակի աշխատանքի անցավ մեր գործարանում։ Կարճ ժամանակում դարձավ որակյալ բանվորուհի։ Նրա ձեռքի տակով անցած գործվածքները միշտ ձևման են գնում մաթեմատիկական ճշտությամբ, առանց որևէ սխալի։ Նրան շատ է օգնում իր միջնակարգ կրթությունը, որի շնորհիվ կատարում է օրինակելի հաշվարկումներ։ Նրանից ետ չի մնում նաև Էլիզա Այվազյանը։ Նա ցեխում նվիրված աշխատելուց բացի, միաժամանակ գիշերային դպրոցում ստանում է միջնակարգ կրթություն։ Դա նրան հնարավորություն է տալիս լավ տիրապետելու իրեն հանձնված գործի տեխնիկան։ Էլիզան վերջին շրջանում ամեն ամիս տալիս է բամբակի գործվածքեղենի 50 մետր

խնայողություն։ Այդ հաջողությանը նա հասնում է այն բանի պատճառով, որ կտորը փռելիս ավելացած ամենավերջին սանտիմետրն էլ կարողանում է ճիշտ օգտագործել, ասենք՝ շալվարների կանթապատման համար։

Բայց այդ ամենը չի նշանակում, թե մեզ մոտ բոլորը լավ են աշխատում։ Կան նաև այնպիսի աշխատողներ, որոնք անուշադիր են գործի ժամանակ, լավ չեն տիրապետում տեխնիկային և նրանց վատ աշխատանքի պատճառով խոտան արտադրանք է լինում։

Ագիտատորն իր զրույցի այդ մասում քննադատական դիտողություններ է անում առանձին աշխատողների և տեղն ու տեղը պարզաբանում նրանց թերությունների պատճառները և այն միջոցները, որոնց օգնությամբ կարելի է հասնել առաջավորներին։

— Հումքը խնայելու գործում խոշոր դեր են կատարում գծագրողները,— շարունակում է ագիտատորը։ Նրանք են պատրաստում զգեստների մոդելները։ Առանց այդ մոդելների, հաջող չեն ստացվի կարված զգեստները։ Մեր գծագրողներն էլ պայքարում են հումքի խնայողության և բարձրորակ հագուստներ պատրաստելու համար։ Նրանք մեծագույն ճշտությամբ դասավորելով ձևելու



ենթակա կտորի մասնիկները, աշխատում են որ ոչ մի սանտիմետր կորուստ չլինի։ Դա խոշոր նշանակություն ունի հումքը տնտեսելու ասպարեզում։ Օրինակ, երկարամյա գծագրող վարպետ Հմայակ Նալբանդյանը այնպիսի հմտությամբ է գծագրում, որ ամեն օր կտորեղենի խնայողություն է տալիս։ Նրա օրինակով աշխատում են շատերը։

Պարզաբանելով հումքի խնայողության վերաբերյալ առաջավորների փորձը, ագիտատորը հանգամանորեն խոսում է հագուստեղենի որակը բարձրացնելու, առաջավոր ձևվողների և կարողների աշխատանքի դրական փորձի մասին։ Վարպետ Ավագ Ազատյանի ձևած կտորներից մինչև հիմա խոտան չի արձանագրվել,— ասում է ագիտատորը։— Նա մտահոգված է այն խնդրով, որ երիտասարդ բանվորները յուրացնեն առաջավորների փորձը և տան միայն գերազանց որակի արտադրանք։

Զրույցի վերջում ագիտատորը ունկնդիրներին տեղյակ պահեց, թե ով ինչպես է կատարում ստանձնած պարտավորությունը՝ հումքը խնայողաբար օգտագործելու և բարձր որակի արտադրանք տալու վերաբերյալ։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՄԱՅԻՍ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1. ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅԱՆ ՕՐԸ՝ ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մայիսի մեկը, *Երկեր, Հատոր 7, էջ 243—248, Հայպետհրատ, 1949։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մայիսի մեկը, *Երկեր, Հատոր 8, էջ 439—444, Հայպետհրատ, 1949։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երեք ճառ Կարմիր հրապարակում *1 Մայիսի 1919 թ., Երկեր, Հատոր 29, էջ 397—401, Հայպետհրատ, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ։ *Զեկուցում պարտիայի XX համագումարին, Հայպետհրատ, 1956։*



## *2. ՄԱՄՈՒԼԻ ՕՐԸ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մեր թերթերի բնույթի մասին, *Երկեր, Հատոր 28, էջ 106—109, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ինչից սկսել, *Երկեր, Հատոր 5, էջ 11—25, 1948։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956։*

**ՍՄԿՊ XX** համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956։*

Դ. Տ. ՇԵՊԻԼՈՎ— *Ճառ պարտիայի XX համագումարում, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 18-ի համարում*

Մամուլի մարտական խնդիրները, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի մարտի 20-ի առաջնորդողը։*

## *3. ՀԱՂԹԱՆԱԿԻ ՏՈՆԸ*

(Մայիսի 9-ը)

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշ-

վետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956։*

## 4. ԱՆՇԵՂՈՐԵՆ ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ՊԱՐՏԻԱՅԻ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի բանաձևը ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցման վերաբերյալ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 25-ի համարում։*

ՍՄԿՊ XX համագումարի որոշումները գործողության մարտական ծրագիր են, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի մարտի 11-ի համարում։*

Ռեսպուբլիկայի և Երևան քաղաքի պարտիական ակտիվի համատեղ ժողովը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի մարտի 14-ի համարում։*

Բոլոր ուժերը ՍՄԿՊ XX համագումարի որոշումների կենսագործմանը, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի մարտի 16-ի առաջնորդողը։*

Ռեսպուբլիկայում օրեցօր ծավալվում է մրցություն ՍՄԿՊ XX համագումարի որոշումները կենսագործելու համար, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի մարտի 17-ի համարում։*



## 5. ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵՆՔ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՐԿՐԻՆ ԱՎԵԼԻ ՇԱՏ ԵՎ ԱՎԵԼԻ ԲԱՐՁՐՈՐԱԿ ԱՐՏԱԴՐԱՆՔ ՏԱԼՈՒ ՀԱՄԱՐ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ինչպես կազմակերպել մրցությունը, *Երկեր, Հատոր 26, էջ 493—506, Հայպետհրատ, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956։*

Նախամայիսյան սոցիալիստական մրցությունը, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի մարտի 31-ի առաջնորդողը։*

Պետական պլանը կատարել սահմանված նոմենկլատուրայով, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի ապրիլի 1-ի առաջնորդողը։*

## 6. ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԱՐՄԱՏԱՎՈՐԵՆՔ ՆՈՐ ՏԵԽՆԻԿԱՆ, ԲԱՐՁՐԱՑՆԵՆՔ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Աշխատանքի արտադրողականության բարձրացումը, *Երկեր, հատոր 27, էջ 306—310, Հայպետհրատ, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *մաս 2-րդ, Հայպետհրատ, 1956։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *2-րդ մաս, Հայպետհրատ, 1956։*

Արտադրանքի ինքնարժեքի իջեցման համար, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի մարտի 23-ի առաջնորդողը։*

## 7. ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻ ՄԵՋ ԼԱՅՆՈՐԵՆ ԱՐՄԱՏԱՎՈՐԵՆՔ ԳԻՏՈՒԹՅԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ ԵՎ ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԸ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշ-



վետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *մաս 2-րդ, գյուղատնտեսություն, Հայպետհրատ, 1956։*

ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *մաս 4-րդ, գյուղատնտեսության վերաբերյալ, Հայպետհրատ, 1956։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի բանաձևը ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցման վերաբերյալ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 25-ի համարում։*

## 8. ԱՆԸՆԴՀԱՏ ԲԱՐԵԼԱՎԵՆՔ ՑԱՆՔԵՐԻ ՈՒ ԱՅԳԻՆԵՐԻ ՄՇԱԿՈՒԹՅՈՒՆԸ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *մաս 2-րդ, գյուղատնտեսություն, Հայպետհրատ, 1956։*

Նոր ցուցանիշներ 1956 թվականի Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակիցների համար, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի մարտի 17-ի համարում։*

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեում և ՍՍՌ Միության Մինիստրների Սովետում— գյուղատնտեսական արտելի կանոնադրության և կոլտնտեսային արտադրու-

թյան կազմակերպման ու արտելի գործերի կառավարման ասպարեզում կոլտնտեսականների նախաձեռնության հետագա զարգացման մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի մարտի 10-ի համարում։*

*Ուկրաինական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի ճակնդեղագործության առաջավորների ռեսպուբլիկական խորհրդակցության մասնակիցների ԴԻՄՈՒՄԸ ՍՍՌ Միության բոլոր ճակնդեղագործ կոլտնտեսականներին ու կոլտնտեսուհիներին, ՄՏԿ-ների ու սովխոզների աշխատողներին և գյուղատնտեսության մասնագետներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի ապրիլի 3-ի համարում։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Մինիստրների Սովետի ԴԻՄՈՒՄԸ *բոլոր կոլտնտեսականներին ու կոլտնտեսուհիներին, սովխոզների բանվորներին ու բանվորուհիներին, ՄՏԿ-ների, գիտահետազոտական ինստիտուտների, փորձակայանների աշխատողներին, գյուղատնտեսներին ու զոոտեխնիկներին, գյուղատնտեսության բոլոր աշխատողներին ու մասնագետներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի ապրիլի 8-ի համարում։*

---

## С О Д Е Р Ж А Н И Е

Стр.

### ТЕМЫ ДЛЯ БЕСЕД.



### ИЗ ОПЫТА АГИТАЦИОННОЙ РАБОТЫ.



### В ПОМОЩЬ АГИТАТОРАМ





Խմբագիր՝ Գր. ԹԵՏՐՈՍՅԱՆ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ա. ԿԱՐԻՆՅԱՆ— «Ակնարկներ հայ պարբերական մամուլի պատմության»: *Գինը 18 ռ. 80 կ., 500 էջ, տիրաժ 3.000։*

Գ. ՎԱՐԴՈՒՄՅԱՆ— «Լոռեցիների նոր կենցաղը»: *Գինը 5 ռ., 160 էջ, տիրաժ 1.000։*

Ս. ՂԱԶԱՐՅԱՆ— «Ժամանակակից հայոց լեզուն և ռուսերենի դերը նրա հարստացման ու զարգացման մեջ»: *Գինը 22 ռ. 40 կ., 584 էջ, տիրաժ 3.000։*

Հ. ԲՈՅԱԽՉՅԱՆ— «Գյուղատնտեսական կենդանիների վարակիչ հիվանդությունների պրոֆիլակտիկան»: *Գինը 4 ռ. 90 կ., 296 էջ տիրաժ 3.000։*

Գ. ԲԱԺՈՎ— «Արծաթե կճղակը»: *Գինը 1 ռ. 60 կ., 16 էջ, տիրաժ 10.000։*

«Երեք խոզուկ», *անգլիական հեքիաթ։ Գինը 3 ռ. 60 կ., 48 էջ, 20.000։*

Ջաննի Ռոդարի— «Բարև երեխաներ»: *Գինը 1 ռ. 50 կ., 60 էջ, տիրաժ 10.000։*

---

**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 8 1956 г.**

*ՎՖ 02495 Պատվեր 349 Տիրաժ 8950*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 50 կոպ.։*